Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 7 ԱՊՐԻԼ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 3—52—78։*

---





# ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ԴՐՈՇՈՎ

## (Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՀԻՇԱՏԱԿԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ)

*1958 թվականի ապրիլի 22-ին լրանում է Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող Վ. Ի. Լենինի ծննդյան 88-ամյակը, որը անհուն սիրով է նշում սովետական ժողովուրդը և աշխարհի ողջ պրոգրեսիվ մարդկությունը։ Վ. Ի. Լենինի կյանքն ու գործունեությունը ռևոլյուցիոն տիտանի հերոսապատում է, որն իր կնիքը դրեց պատմության զարգացման վրա և աշխատավոր մասսաներին բերեց լիակատար ազատագրություն, կենսուրախ ու երջանիկ կյանք։ Խորապես արդարացի ու եռախտապարտ են հնչում ֆրանսիական ականավոր գրող Հանրի Բարբյուսի իմաստուն խոսքերը, որ Լենինը պատմության մեծագույն կերտողներից մեկն էր և ոչ-ոք ավելին չի արել աշխատավոր մարդկության համար, քան նա։*

*Վ. Ի. Լենինը ամենից առաջ հանդիսացել*



է գիտական սոցիալիզմի հիմնադիրներ Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի անմահ գործի հանճարեղ շարունակողը։ Նա իրեն դրսևորեց որպես ստեղծագործական մարքսիզմի կորիֆեյ և կանգնեց իր լավագույն ուսուցիչների շարքում։ Ավելին, Լենինը ոչ միայն զարգացրեց ու մի նոր աստիճանի բարձրացրեց պրոլետարիատի ու աշխատավոր մասսաների ազատագրական շարժման գիտությունը, այլև անմիջականորեն գլխավորեց այդ գիտության կենսագործման համար մղվող պայքարը և հասավ պատմական մեծ նվաճումների։

***

Վաղ շրջանից դառնալով մարքսիստ, Լենինն ատելությամբ ու թշնամությամբ է լցվում դեպի տիրող շահագործողական կարգերը։ Դրա հետ միասին նա դեռ երիտասարդ հասակում միանգամայն ճիշտ հասկացավ, որ մարքսիզմը ոչ միայն բացատրում է աշխարհը, այլև մոբիլիզացնում աշխատավոր մասսաներին՝ ռևոլյուցիոն ճանապարհով վերափոխելու այն։ Դրա գլխավոր նախապայմանը պրոլետարիատի ինքնուրույն քաղաքական պարտիայի ստեղծումն էր։ Ամբողջ ուժով ընդգծելով այդպիսի պարտիայի ստեղծման անհրաժեշ-



տությունն ու կարևորությունը, Լենինը 1902 թվականին գրում էր. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։

Այդ այն ժամանակաշրջանն էր, երբ 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին կապիտալիզմը մտավ իր զարգացման վերջին փուլը՝ իմպերիալիզմի էպոխան և ռևոլյուցիոն շարժման կենտրոնը տեղափոխվեց Ռուսաստան։ Իմպերիալիզմի դարաշրջանում, երբ պրոլետարական ռևոլյուցիան դարձավ օրակարգի հարց, Վ. Ի. Լենինը խնդիր դրեց ստեղծել նոր տիպի, մարքսիստական-ռևոլյուցիոն պարտիա՝ ի հակադրություն 2-րդ Ինտերնացիոնալի օպորտունիստական պարտիաների։ Վ. Ի. Լենինը պարտիան դիտում էր որպես բանվոր դասակարգի առաջավոր, գիտակից ու կազմակերպված ջոկատ, որպես պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձև, որը զինված մարքսիզմի ռևոլյուցիոն թեորիայով, մասսաներին տանում է դեպի վճռական գրոհի՝ ընդդեմ շահագործողական կարգերի։

Դեռևս 900-ական թվականներից Վ. Ի. Լենինն անդուլ պայքար ծավալեց «էկոնոմիստների» և ամեն կարգի օպորտունիստա-

ների դեմ՝ նոր տիպի պարտիա ստեղծելու համար։ Նա հանճարեղորեն մշակեց մարքսիստական պարտիայի կառուցման պլանը, այդ պարտիայի գաղափարական, կազմակերպական, տակտիկական-քաղաքական և տեսական հիմունքները։ Վ. Ի. Լենինի տիտանական պայքարը հաղթանակով պսակվեց և 1903 թվականին, ՌՍԴԲՊ 2-րդ համագումարում նոր տիպի պարտիայի, բոլշևիկյան պարտիայի սկիզբը դրվեց։

Բոլշևիկյան պարտիան մեծ Լենինի գլխավորությամբ աշխատավոր մասսաներին կազմակերպեց ու առաջնորդեց դեպի պայքար ընդդեմ ցարիզմի ու կապիտալիզմի։ Վ. Ի. Լենինը ոչ միայն միլիոնավոր մասսաների մեծագույն կազմակերպիչն էր, այլև մարքսիզմի խոշորագույն թեորետիկ, ռևոլյուցիոն մտքի հանճար։ Նրա մոտ պրոլետարական շարժման գործնական-կազմակերպական մեծագույն տաղանդը միահյուսվում էր տեսական հզորության հետ։ Վ. Ի. Լենինը պահանջում էր, որ հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությունը զուգակցվի մասսաների ռևոլյուցիոն նախաձեռնության կազմակերպման հետ։

Բոլոր երկրների մարքսիստներից Լենինը առաջինն էր, որ կարողացավ ցույց տալ,



թե իմպերիալիզմը ոչ միայն կապիտալիզմի բարձրագույն ստադիան է, այլև նրա վերջին աստիճանը, նեխող կապիտալիզմը, պրոլետարական ռևոլյուցիայի նախօրյակը։ Նա հայտնագործեց կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափության օրենքը և դրա հիման վրա հանգեց մի երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության հանճարեղ եզրակացությանը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի նոր, լենինյան թեորիան մեր դարաշրջանի ամենամեծագույն հայտնագործությունն է, որը ոչ միայն առաջ մղեց մարքսիզմը, այլև ռևոլյուցիոն գործողության որոշակի, կոնկրետ ծրագիր ու հեռանկար տվեց բոլոր երկրների կոմունիստներին ու պրոլետարներին։

Ղեկավարվելով այդ թեորիայով բոլշևիկների պարտիան՝ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ 1917 թվականին պրոլետարիատին ու աշխատավոր մասսաներին վճռական պայքարի հանեց կապիտալիզմի դեմ։ Ռուսաստանում հաղթանակեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որով մարդկության պատմության մեջ սկսվեց նոր դարագլուխ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի դա-

բազլուխը։ Վ. Ի. Լենինի անունը դարձավ ամբողջ աշխարհի ազատասեր մարդկության սիմվոլն ու դրոշը։

Վ. Ի. Լենինը զարգացրեց ու հարստացրեց նաև պրոլետարիատի դիկտատուրայի մարքսյան ուսմունքը։ Նա ռուսական փորձի ուսումնասիրության հիման վրա բացահայտեց Սովետների էությունը և ցույց տվեց, որ Սովետների ռեսպուբլիկան պրոլետարիատի դիկտատուրայի լավագույն քաղաքական ձևն է։ Այդ խոշորագույն հայտնագործությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին մասսաներին լցրեց անհուն եռանդով դեպի մեծագույն նպատակը՝ Սովետների իշխանությունը։ Ռևոլյուցիայի հաղթանակից հետո լայնորեն դրսևորվեց Սովետական իշխանության էությունը, որպես դեմոկրատիայի բարձրագույն ձև և ամենակենսունակ հասարակարգը։

Վ. Ի. Լենինը միաժամանակ մատնանշել է, որ պրոլետարիատի դիկտատուրան, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի քաղաքական իշխանություն, կարող է ունենալ բազմազան ձևեր։ Այդ գիտական կանխատեսումը նույնպես հաստատվեց կյանքում՝ հանձին ժողո-



վրդական դեմոկրատիայի իշխանության, որն այժմ հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկը։

Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան բանվորա-գյուղացիական դաշինքի հատուկ ձև է՝ պրոլետարիատի հեգեմոնիայով։ Նա մի ամբողջական ուսմունք ստեղծեց բանվորա-գյուղացիական դաշինքի և պրոլետարիատի հեգեմոնիայի մասին ոչ միայն բուրժուա-դեմոկրատական ու սոցիալիստական ռևոլյուցիաների մեջ, այլև սոցիալիստական շինարարության ծավալման ասպարեզում։ Ընդ որում Վ. Ի. Լենինը վճռականորեն ընդգծեց, որ պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում գլխավորը Կոմունիստական պարտիայի ղեկավարությունն է։

Կոմունիստական պարտիան զինված լենինյան այդ ղեկավար դրույթներով ՍՍՌՄ-ում ապահովեց բանվորների և գյուղացիների ամուր դաշինքը, որի վրա էլ խարսխվում է սոցիալիստական պետության ուժն ու հզորությունը, կոմունիստական հասարակության կառուցումը։ Օգտագործելով Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված Սովետական պետության հարուստ փորձը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Կոմունիստա-

կան ու բանվորական պարտիաների գլխավորությամբ կառուցում են սոցիալիզմ։

Որպես աշխարհում առաջին բանվորագյուղացիական պետության հիմնադիր և սովետական առաջին կառավարության ղեկավար Վ. Ի. Լենինը մշակեց ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակության կառուցման հոյակապ պլան։ Այդ պլանի բաղկացուցիչ մասերն էին երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը և կուլտուրական ռևոլյուցիան։ Մեր երկրում արդեն կենսագործվել է սոցիալիզմի կառուցման լենինյան ծրագիրը, իսկ այժմ աստիճանական անցում ենք կատարում դեպի կոմունիզմ։

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ գնալով լենինյան ուղիով, հասել է վիթխարի հաջողությունների։ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 33 անգամ, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 74 անգամ։ Հաջողությամբ կատարվում ու գերակատարվում են 6-րդ հնգամյա պլանի խնդիրները։ Այժմ մեր արդյունաբերության համախառն արտադրանքը 1953 թվականի համեմատու-



թյամբ աճել է 55 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 61 տոկոսով, իսկ սպառման առարկաների արտադրությունը՝ 45 տոկոսով։ Պարտիայի 20-րդ համագումարից հետո շահագործման հանձնվեցին ևս 1600 արդյունաբերական ձեռնարկություններ, արդյունաբերության ընդհանուր արտադրանքը ավելացավ 22 տոկոսով, իսկ ծանր ինդուստրիայի արտադրանքը՝ 24 տոկոսով։

Այստեղ նորից ցայտուն կերպով դրսևորվում է սոցիալիստական տնտեսության զարգացման լենինյան գիծը՝ ծանր արդյունաբերության առավել զարգացման անհրաժեշտությունը, որպես գլխավոր նախապայման ամբողջ ժողովրդական տնտեսության արագ առաջխաղացման և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կազմակերպման համար։ 1958 թվականին նախատեսված է արտադրել 53,6 միլիոն տոննա պողպատ, 47,7 միլիոն տոննա գլանվածք, 489,3 միլիոն տոննա ածուխ, 112 միլիոն տոննա նավթ, 231 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։

Ներկայումս ՍՍՌՄ-ը ի վիճակի է մեկ տարում տալ այնքան արդյունաբերական

արտադրանք, որքան կարող էր տալ անց-յալի 15—20 տարիներում։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովն իր նախընտրական ճառում արդարացիորեն նշեց, որ «այժմ մենք ի վիճակի ենք լուծելու ամեն մի խնդիր, որքան էլ մեծ ու բարդ լինի այն»։ Դա բխում է սոցիալիստական սիստեմի առավելություններից, մեր ձեռք բերած տեխնիկական բարձր մակարդակից, Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հմուտ ղեկավարությունից, որի շնորհիվ անընդհատ կատարելագործվում են արտադրության կառավարման մեթոդները և բարձրացվում է աշխատանքի արտադրողականությունը։ Այժմ բոլորն էլ տեսնում են, որ լենինյան ցուցումների համաձայն արդյունաբերության ու շինարարության ղեկավարման աշխատանքների վերակառուցումից հետո, երբ կազմավորվել ու լիաթոք կերպով գործում են տնտեսական-վարչական շրջանները՝ իրենց ժողովրդական տնտեսության խորհուրդներով, էլ ավելի է բարձրացել տեղական օրգանների պատասխանատվությունն ու պահանջկոտությունը, ավելի արդյունավետ կերպով են օգտագործվում նյութական ռեսուրսները, ձեռնարկություններում ավելի հաջողությամբ է



արմատավորվում տեխնիկական պրոգրեսը և այլն։ Ընդհանուր առմամբ ՍՍՌՄ արդյունաբերությունն ապրում է անշեղ վերելք և դա ժողովրդական տնտեսության նաև մյուս ճյուղերի արագ զարգացման գլխավոր երաշխիքն է։

Ծանր արդյունաբերության բազայի վրա վերափոխվեց նաև մեր երկրի գյուղատնտեսությունը, որը զարգանում է արագ տեմպերով։ Գյուղատնտեսական մթերքների առանձին տեսակների ապրանքային արտադրությունը նախառևոլյուցիոն ժամանակների համեմատությամբ ավելացել է 3—6 անգամ։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հատկապես վերջին 4 տարվա որոշումներն ու պրակտիկ միջոցառումները, 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողերի յուրացումը վճռական դեր խաղացին հացահատիկի, շաքարի ճակընդեղի, բամբակի և տեխնիկական մյուս կուլտուրաների արտադրության ավելացման գործում։ Նշանակալից է անասնաբուծության անշեղ վերելքը։ Միայն վերջին 4 տարում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 10,9 միլիոնով։ Անընդհատ ավելանում է մսի, կաթի, յուղի արտադրությունը։ ՍՄԿՊ Կենտկոմի 1955

թվականի Հունվարյան պլենումի նախատեսած պլանը կաթնատվության ավելացման վերաբերյալ կատարվեց ժամկետից շուտ՝ 3 տարում (նախատեսված 6 տարվա փոխարեն)։ 1957 թվականին մեր երկրում կաթի համախառն արտադրանքը հասավ 54,7 միլիոն տոննայի և կազմում է ԱՄՆ-ում կաթի արտադրության ծավալի 95 տոկոսը։ Ինչ վերաբերում է յուղի ընդհանուր արտադրությանը, ապա ՍՍՌՄ-ն արդեն անցյալ տարի որոշ չափով գերազանցեց ԱՄՆ-ին։ Սիստեմատիկաբար աճում է գյուղատնտեսության մեքենայացումը։ Վերջին 4 տարում գյուղատնտեսությանն է տրվել 908 հազար տրակտոր և միլիոնավոր այլ մեքենաներ։ Այժմ գյուղատնտեսության ասպարեզում բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների թիվը հասնում է 277 հազարի։

ՍՄԿԿ Կենտկոմի 1958 թվականի Փետրվարյան պլենումի որոշումը և ապա ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիայի ընդունած օրենքը՝ «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» նոր ու մեծ հեռանկարներ են բա-



ցում գյուղատնտեսության հետագա վերելքի գործում։

Արդյունաբերության և գյուղատնտեսության կառավարման ասպարեզում պարտիայի ձեռք առած ռեոլյուցիոն միջոցառումներն ապահովում են տնտեսության աննախընթաց վերելքը և օրեցօր բարձրացնում սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը։ Անընդհատ աճում է մեր երկրի ազգային եկամուտը, որը պատկանում է աշխատավոր մասսաներին։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը լենինյան հոգատարությամբ են շրջապատել մեր երկրի քաղաքացիներին։ Այդ է հաստատում նոր օրենքը կենսաթոշակների մասին, ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացումը, աշխատանքային օրվա կրճատումը, ձրի ուսուցման ու բժշկական սպասարկման կազմակերպումը, սոցիալական ապահովագրության բյուջեի անընդհատ ավելացումը, բնակարանային շինարարության ծավալումը և այլն։

Սովետական քաղաքացիներին ի սպաս են դրված ոչ միայն մեր երկրի նյութական բարիքները, այլև կուլտուրական

արժեքները։ Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ միայն սոցիալիզմի-կոմունիզմի պայմաններում գիտությունն ամբողջովին կծառայի աշխատավոր մասսաներին և կծաղկեն ժողովրդական անհամար տաղանդները։ Պատմական ամենակարճ ժամանակամիջոցում լիկվիդացվեց նախկին դարավոր հետամնացությունը և մեր երկիրը դարձավ համատարած գրագիտության, առաջավոր գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի երկիր։ Դրա պերճախոս վկայությունն են մեր գիտնականների, ինժեներների, տեխնիկների ու բանվորների ստեղծած ռեակտիվ և տուրբա-պտուտակային մարդատար ինքնաթիռները, ատոմային սառցահատի կառուցումը, միջմայրցամաքային բալիստիկ հրթիռները, երկրի առաջին՝ սովետական արհեստական արբանյակների արձակումը։ Թեև գիտության ու տեխնիկայի մի շարք վճռական ճյուղերում մեր երկիրը հասել ու անցել է ԱՄՆ-ին, բայց ինչպես Լենինն էր սովորեցնում, սովետական մարդիկ երբեք չեն կարող հանգստանալ ձեռք բերածով, այլ պետք է բազմապատկեն իրենց նվաճումները և, ապահովելով մեր Հայրենիքի առանդարգային գերը կյանքի բոլոր բնագավառներում, լուծեն նաև ՍՍՌՄ հիմնական տնտ-



տեսական խնդիրը, այսինքն՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով հասնեն ու անցնեն կապիտալիստական ամենազարգացած երկրին՝ ԱՄՆ-ին։ Դա էլ, իհարկե, մոտակա ապագայի հարց է և սովետական մարդիկ ունեն բոլոր պայմաններն ու հնարավորությունները հաջողությամբ կատարելու լենինյան այդ պատգամը ևս։

Լենինիզմի գաղափարների կենսահաստատ ուժը ցայտուն կերպով դրսևորվեց նաև Կոմունիստական պարտիայի ազգային քաղաքականության մեջ։ Վ. Ի. Լենինը հանդիսացավ ազգային հարցի մարքսիստական թեորիայի ու ռևոլյուցիոն ծրագրի մշակողը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան արմատապես լուծեց ազգային հարցը և մեր երկրի բոլոր ժողովուրդները դարձան ազատ ու իրավահավասար։ Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ ստեղծվեց ՍՍՌՄ-ը, որպես մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդների միասնական ու կամավոր ընտանիք։ Սովետական ամեն մի ժողովուրդ ձեռք բերեց քաղաքական, տնտեսական և կուլտուրական զարգացման լայն իրավունքներ ու հնարավորություններ և կարճ ժամանակամիջոցում հասավ մեծագույն հաջողությունների։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում իսկական ազգային վերածնունդ ապրեց նաև հայ ժողովուրդը։ Ցարական կայսրության երբեմնի հետամնաց ծայրամասը, որը դաշնակցության տիրապետության ժամանակ բոլորովին ավերվեց և դարձավ մահվան ու որբերի երկիր, ռուս ժողովրդի օգնությամբ ազատագրվեց տեղական ու օտարերկրյա հարստահարողների լծից, և այժմ դարձել է մեր երկրի առաջավոր, ինդուստրիալ ռեսպուբլիկաներից մեկը։ Հայկական ՍՍՌ արդյունաբերության համախառն արտադրանքը 1957 թվականին մոտավորապես 50 անգամ գերազանցեց նախառևոլյուցիոն՝ 1913 թվականի մակարդակը։ Հայաստանի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ կատարում է 6-րդ հնգամյա պլանով ռեսպուբլիկայի համար նախատեսված առաջադրանքները։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման պետական պլանը 1957 թվականին կատարվեց 102,2 տոկոսով և 1955 թվականի համեմատությամբ ավելացավ 20 տոկոսով։ Հատկապես արագ են զարգանում մեքենաշինությունը, էլեկտրա-տեխնիկական և քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, որոնց արտա-



դրանքը օգտագործվում է մեր ռեսպուբլիկայում, ՍՍՌՄ տարբեր վայրերում, ինչպես նաև արտահանվում է աշխարհի 25 երկրներ։ Անընդհատ աճում է ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Այսպես օրինակ, 1957 թվականին բրդյա գործվածքեղենի արտադրությունը 1953 թվականի համեմատությամբ կազմել է 280 տոկոս, մետաքսյա գործվածքեղենինը՝ 249,4 տոկոս, տրիկոտաժեղենինը՝ 190,2 տոկոս, կաշվե կոշկեղենինը՝ 156,2 տոկոս, կենդանական յուղի արտադրությունը՝ 168,1 տոկոս և այլն։

Որոշակի են հաջողությունները նաև գյուղատնտեսության ասպարեզում։ 1955 թվականի համեմատությամբ հացահատիկի արտադրությունն ավելացել է 15 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 20 տոկոսով, խաղողինը՝ 8,2 տոկոսով։ Անընդհատ բարձրանում է նաև բանջարեղենի ու կարտոֆիլի արտադրությունը։

Ժողովրդական տնտեսության հետ միասին աննախընթաց վերելք է ապրում Սովետական Հայաստանի կուլտուրան։ Ծաղկում ու բարգավաճում է հայ ժողովրդի ստեղծագործական տաղանդը, և մեր ռեսպուբլիկայի գիտնականներն իրենց ավանդն

են մտցնում սովետական ու համաշխարհային կուլտուրայի զարգացման մեջ։

Ռեսպուբլիկայի առաջ այժմ կանգնած են նոր խնդիրներ, որոնց լուծումը վիթխարի չափով կխթանի տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացմանը, աշխատավորության բարեկեցության բարձրացմանը։ Նախատեսվում է, որ առաջիկա 6—7 տարում գունավոր մետաղների արտադրությունը կաճի 3 անգամ, մեքենաշինությունը՝ 4 անգամ. մեր ռեսպուբլիկան պետք է դառնա ՍՍՌՄ պրիբորաշինության հիմնական օջախներից մեկը։ Պետք է ավելի զարկ տրվի քիմիական արդյունաբերության զարգացմանը, հատկապես սինթետիկ թելի ու կաշվի, պլաստմասսայի արտադրությանը։ 1960 թվականին պետք է ավարտվի Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղի կառուցումը։

Սովետական Հայաստանը մեր երկրի ժողովուրդների համերաշխ ընտանիքում ակտիվորեն մասնակցում է կոմունիստական շինարարությանը և ձեռք է բերում նորանոր հաղթանակներ։

Սովետական ժողովրդի ավանգարդը և ուղղություն տվող ուժը Լենինի ստեղծած ու կոփած Կոմունիստական պարտիան է, որն



անխզելիորեն կապված է աշխատավոր մասսաների հետ։ Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը բխում է մեր երկրի բոլոր ժողովուրդների արմատական շահերից և հանդիսանում է սովետական կարգերի կենսական հիմքը։ Ելնելով Լենինի պատգամներից մեր փառապանծ պարտիան անընդհատ ամրապնդում է իր շարքերի միասնությունը և ուժեղացնում ղեկավարությունը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Մեր երկրի, պարտիայի կյանքի և միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման համար բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿՊ XX համագումարը, որը ոչ միայն ամփոփեց անցած ուղու արդյունքները, այլև պատասխան տվեց ժամանակի բոլոր կարևորագույն հարցերին։ Սովետական պետական ու պարտիական աշխատանքում լենինյան նորմաների, ղեկավարության լենինյան սկզբունքների վերականգնումն ու ամրապնդումը վճռական դեր կատարեցին մեր հետագա առաջխաղացման գործում։

Պարտիայի համար առաջնակարգ նշանակություն ունի սովետական ժողովրդի կոմունիստական դաստիարակության և մեր

կադրերի քաղաքական կոփման հարցը։ Կոմունիստական պարտիան միշտ էլ անհաշտ ու վճռական պայքար է մղել մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսության անաղարտության համար։ Նա աճել ու ամրապնդվել է ամեն կարգի թշնամական ու օպորտունիստական հոսանքների ու խմբավորումների՝ մենշևիկների, տրոցկիստների, զինովևականների, բուխարինականների, բուրժուական նացիոնալիստների դեմ մղվող պայքարում։ Միշտ էլ պարտիան հենվել է ժողովրդի, որպես պատմության իսկական կերտողի վրա և վայելել նրա վստահությունն ու աջակցությունը։ Ժողովուրդն էլ պարտիայի մեջ տեսել է իր հարազատ առաջնորդին ու քաղաքական ղեկավարին։

Կոմունիստական պարտիայի և սովետական ժողովրդի անխախտ միասնության վառ ցույց հանդիսացան ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1958 թվականի մարտի 16-ի ընտրությունները, որոնք անցան քաղաքական վիթխարի վերելքով և վերածվեցին համաժողովրդական ցույցի։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցած պատմական ժամանակաշրջանում կապիտալիզմի համաշ-



խարհային սիստեմը նոր հարվածներ ստացավ և սոցիալիզմի ուղին բռնեցին Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներ։ ՍՍՌՄ-ը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և ժողովրդա-դեմոկրատական մյուս երկրները այժմ կազմում են սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, որն իր մեջ միավորում է մոտ 1 միլիարդ բնակչություն և դարձել է խաղաղության պատվարն ամբողջ աշխարհում։

Սոցիալիզմի հզոր լագերը միջազգային կոմունիստական շարժման մեծագույն նվաճումն է։ Հակառակ իմպերիալիստական շրջանների ու նրանց ծախու գրչակների կեղծ հայտարարություններին, թե «կոմունիզմը ճգնաժամի մեջ է», միջազգային կոմունիստական շարժումը անշեղորեն աճում ու ամրապնդվում և դրսևորում է իր շարքերի անխախտ միասնությունը։ Դրա նոր վառ արտահայտությունը հանդիսացան կոմունիստական ու բանվորական պարտիաների 1957 թվականի նոյեմբերին Մոսկվայում տեղի ունեցած խորհրդակցությունները։ Այդ պատմական խորհրդակցությունները խորն ընդհանրացման ենթարկեցին կոմունիստական շարժման ձեռք բերած նվաճումները և ընդունեցին երկու կարևորագույն փաստա-

թղթեր՝ Դեկլարացիան ու Խաղաղության մանիֆեստը, որոնք ունեն ծրագրային նշանակություն ոչ միայն ամբողջ աշխարհի կոմունիստների, այլև բոլոր առաջադեմ մարդկանց համար։ Նոր ուժով դրսևորվեց մարքսիզմի-լենինիզմի գաղափարախոսությամբ զինված կոմունիստական շարժման անխախտ միասնությունն ու հարաճուն հզորությունը, նրա՝ աշխարհը վերափոխող ռևոլյուցիոն ուժի անսասանությունը։

Կոմունիստական շարժման անխորտակ ուժի աղբյուրը նրա ճշմարտացիության ու խորը ժողովրդայնության մեջ է։ Կոմունիստական շարժումն արտահայտում է բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների կենսական շահերը, նրանց հույզերն ու ձգտումները, միտքն ու իմաստությունը, խիղճն ու պատիվը։ Ահա թե ինչու այդ շարժումը պատմական անհրաժեշտությամբ վերածվում է բոլոր երկրների կոմունիստների ու աշխատավոր մասսաների ինտերնացիոնալ շարժման, բառիս բուն իմաստով՝ համաժողովրդական շարժման։ Ուստի աշխարհում և ոչ մի ուժ չի կարող դիմակայել նրան։ Ապագան ամբողջությամբ պատկանում է կոմունիզմին, իսկ այժմ մեր **դարաշրջանի հիմնական բովանդակությունը**



անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին:

Իմպերիալիզմի լագերին լուրջ հարված հասցրեց նաև նրա գաղութային սիստեմի քայքայումը։ Այդ պրոցեսն անդառնալիորեն մոտենում է իր ավարտմանը։ Ասիան համարյա լրովին թոթափել է գաղութային լուծը։ Իմպերիալիզմի ճնշումից ազատագրվել են նաև Աֆրիկայի մի շարք ժողովուրդներ, իսկ մնացածները ծավալել են ազգային-ազատագրական լայն շարժում։ Ընդհանուր առմամբ հետպատերազմյան ժամանակաշրջանում նախկին գաղութներից կազմվեցին 25 նոր՝ անկախ պետություններ, այդ թվում Հնդկաստանը, Ինդոնեզիան, Բիրման, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկան և այլն։

Աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման կազմակերպիչներն ու ղեկավարները կոմունիստական պարտիաներն են։ Դեռ 1919 թվականին Վ. Ի. Լենինը գրում էր. «Կոմունիստական շարժումը ամբողջ աշխարհում հիանալի աճում է—ավելի դանդաղ, քան կուզեինք, բայց լայն, հզոր, խոր և անհաղթահարելի»։

Այս տողերը գրվել են մեր երկրի համար խիստ ծանր օրերին, երբ միջազգային իմպերիալիզմը փորձում էր «բնում» խեղդել

նորաստեղծ Սովետական իշխանությունը, իսկ արտասահմանում դեռ նոր էին ծագում ու կազմակերպվում կոմունիստական պարտիաները, կոմունիստների թիվը աշխարհում հասնում էր ընդամենը 300—400 հազարի։ Մինչդեռ այժմ կոմունիստական ու բանվորական պարտիաները գոյություն ունեն աշխարհի 75 երկրներում և նրանք համախմբում են ավելի քան 33 միլիոն մարդ։

Միջազգային կոմունիստական շարժման առաջամարտիկն ու գլխավորող ուժը Սովետական Միության Կոմունիստական պարտիան է, որն ունի ավելի քան կեսդարյա պատմություն և կուտակել է մեծահարուստ փորձ։ Լենինի ստեղծած ու ղեկավարած Կոմունիստական պարտիայի պատմությունը ուսուցման մեծագույն դպրոց է աշխարհի բոլոր կոմունիստների համար։

Կյանքը լիովին հաստատում է կոմունիստական ու բանվորական պարտիաների հայացքների միասնությունը սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիստական շինարարության հիմնական հարցերում։ ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների պատմական փորձը վկայում է, որ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքները պարտադիր են կապիտալիզմից սոցիալիզմին անցնող



բոլոր երկրների համար, որ սոցիալիստական ռևոլյուցիան և սոցիալիստական շինարարությունն ունեն բոլորի համար ընդհանուր օրինաչափություններ։ Բայց դրանք պետք է կիրառել ստեղծագործորեն, ամեն անգամ ելնելով պատմական կոնկրետ պայմաններից ու ազգային առանձնահատկություններից։ Այստեղից էլ մարքսիզմ-լենինիզմի պահանջը՝ անհաշտ ու վճռական պայքար մղել մի կողմից՝ ռևիզիոնիզմի, իսկ մյուս կողմից՝ դոգմատիզմի ու աղանդավորության դեմ։

Սոցիալիզմի լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը, աճում ու ամրապնդվում է։ Այժմ նրա արդյունաբերական արտադրանքը կազմում է աշխարհի արդյունաբերական արտադրանքի $1/3$-ը։ ՍՍՌՄ-ի հետ միասին արագ տեմպերով են զարգանում Չինաստանը, Չեխոսլովակիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Ռումինիան, Բուլղարիան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները։ Նրանք հաջողությամբ սոցիալիզմ են կառուցում և բարձրացնում ժողովրդական մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակը, պաշտպանում խաղաղության գործը։ Անսասան է սոցիալիստական երկրների բարեկամությունն ու միասնությունը։ Ներ-

կայումս արդեն ակնառու է այն փաստը, որ արդի միջազգային դրությունը թևակոխում է մի այնպիսի բեկման մոմենտ, երբ սոցիալիզմի ուժերը գերազանցում են կապիտալիզմից ոչ միայն աշխարհի բնակչության վրա ունեցած ազդեցությամբ, այլև տնտեսության, գիտության ու տեխնիկայի խոշոր նվաճումներով։ Պատկերավոր է ասել չին մեծ ժողովրդի առաջնորդ Մաո Ցզե-դունը, որ «այժմ ոչ թե Արևմուտքից եկող քամին է ճնշում Արևելքից եկող քամուն, այլ Արևելքից եկող քամին Արևմուտքից եկող քամուն»։

Հավատարիմ լենինյան սկզբունքներին, սոցիալիզմի լագերը՝ Սովետական Միության գլխավորությամբ վարում է խաղաղասիրական քաղաքականություն, տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության, ժողովուրդների անվտանգության ու համագործակցության քաղաքականություն։ Խաղաղությունը պաշտպանելու համար ՍՍՌՄ-ը տալիս է կոնկրետ օրինակ, կրճատելով իր զինված ուժերը, ռազմական բյուջեն, վերացնելով ռազմական բազաները ուրիշ երկրներում և հանդես է գալիս միջազգային լարվածությունը թուլացնելու կոնստրուկտիվ առաջարկներով։



Սովետական Միությունն առաջարկում է կրճատել բոլոր երկրների և հատկապես մեծ պետությունների զինված ուժերը, արգելել ատոմային ու ջրածնային ռումբերի փորձարկումները և ընդհանրապես այդ մահաբեր զենքերի արտադրությունը, կենտրոնական Եվրոպայում ստեղծել ատոմային զենքից ազատ գոտի, կազմակերպել կոլեկտիվ անվտանգություն, ուժեղացնել տնտեսական ու կուլտուրական կապերը տարբեր երկրների միջև և ընդհանուր առմամբ բոլոր վիճելի հարցերը լուծել խաղաղ բանակցությունների միջոցով։ Հենց այդ նպատակին է ծառայում Սովետական կառավարության նաև վերջին առաջարկը՝ բարձր մակարդակով պետական ղեկավար գործիչների խորհրդակցություն հրավիրելու մասին, խորհրդակցություն, որտեղ կքննարկվեն աշխարհի ժողովուրդներին հետաքրքրող առավել կարևոր հարցեր։

ՍՍՌՄ 5-րդ գումարման Գերագույն Սովետի առաջին սեսիան որոշում ընդունեց ատոմային և ջրածնային զենքի փորձարկումները Սովետական Միության կողմից միակողմանիորեն դադարեցնելու վերաբերյալ և դիմումներ ուղղեց ԱՄՆ-ի կոնգրեսին, Մեծ Բրիտանիայի պառլամենտին, ԳՖՌ բունդես-

տագին ու բոլոր երկրների պառլամենտներին՝ պաշտպանելու այդ խաղաղասիրական նախաձեռնությունը, կանխելու գերմանական միլիտարիզմի վերականգնումը և պաշտպանելու ժողովուրդների անվտանգությունը։

Այդ բոլոր առաջարկները ստանում են սոցիալիստական երկրների և աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդների համակրանքը, բայց իմպերիալիզմի լագերը՝ ԱՄՆ-ի գլխավորությամբ ամեն կերպ խուսափում է նույնիսկ դրանց քննարկումից և պարզապես ձախողում խաղաղության պաշտպանության գործը։ Դա բխում է իմպերիալիզմի բնույթից, որը ձգտում է պատերազմի միջոցով նոր առավելագույն շահույթներ ստանալ։

Ամբողջ աշխարհում կոմունիզմի հարաճուն ուժերից սարսափահար և ներքին հակասությունների մեջ գալարվող միջազգային իմպերիալիզմը, որի վրա կախված է ահավոր տնտեսական ճգնաժամի ուրվականը, փրկություն է որոնում պատերազմի մեջ։ Վարելով «սառը պատերազմի» և «ուժի դիրքերից ելնող» քաղաքականություն, իմպերիալիստական պետությունները նյութում են ագրեսիվ ակտեր, արյունալից կռիվներ են մղում Ալժիրում, դավեր սարքում ին-



դոնեզական ժողովրդի դեմ, կազմակերպում խռովություններ, որոգայթներ են լարում Մերձավոր ու Միջին Արևելքում, աշխարհի տարբեր մասերում ստեղծում ռազմական բլոկներ ու բազաներ և այլն։ Բայց ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, այլևս ոչ մի բան չի կարող օգնել վառամյալ իմպերիալիզմին։ Անտասան կանգնած է սոցիալիզմի հզոր լագերը։ Խաղաղության համաշխարհային գոտին ընդգրկում է նորանոր երկրներ և աշխարհի ժողովուրդները վճռաբար պայքարում են խաղաղության պաշտպանության համար։

Պատմական ամեն մի ժամանակաշրջան նոր հաղթանակներ է բերել լենինիզմին, այդպիսին կլինի նաև վերահաս ժամանակաշրջանը։ Լենինիզմի գաղափարները ապրում ու հաղթանակում են մեր Հայրենիքի կոմունիստական սխրագործությունների մեջ, ժողովրդական դեմոկրատիայի երկրների սոցիալիստական շինարարության ծավալման մեջ, կապիտալիստական երկրների ռեվոլյուցիոն շարժումների և գաղութային ու կախյալ երկրների ազգային-ազատագրական շարժումների մեջ։ Լենինիզմը աշխատավոր մարդկության լիակատար ու վերջնական ազատագրման անպարտելի դրոշն է։ Ապագան լիովին կոմունիզմինն է։

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՍԵՄԻՆԱՐ ՊԱՐԱՊՄՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Վ. ԽՆԳԻԲԱՐՅԱՆ

Աշխատավորների լայն շրջանում կատարվող ագիտացիոն-բացատրական աշխատանքը ավելի նպատակասլաց, ավելի բովանդակալից դարձնելու գործում խոշոր դեր են խաղում ագիտատորների սեմինար պարապմունքները։ Սեմինարների միջոցով ագիտատորները մեթոդական և գործնական օգնություն են ստանում իրենց ունկնդիրների հետ ագիտացիոն զրույցներ ունենալու վերաբերյալ։

Սեմինար պարապմունքները միաժամանակ լավագույն միջոց են ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակում կատարելու գործում։ Այդ է պատճառը, որ որքան կանոնավոր ու սիստեմատիկ են գործում ագիտատորների սեմինարները, այնքան քաղաքական-բացատրական աշխատանքը լավ է ընթանում ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում, այն դառնում է հետաքր-



քիր, նպաստում է ձեռնարկությունների ու կոլտնտեսությունների առջև դրված խնդիրները ժամանակին և բարձր ցուցանիշներով կատարելու գործին։ Օրինակ, երբ Լենինականի Ձերժինսկու անվան մանվածքային ֆաբրիկան աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին նոր առաջադրանք ստացավ, մանրակրկիտ հաշվումները ցույց տվեցին, որ ֆաբրիկայի կոլեկտիվը աշխատանքի կազմակերպման հին մեթոդով չի կարող կատարել այդ առաջադրանքը։ Ֆաբրիկայի պարտկազմակերպության բյուրոն և դիրեկցիան աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցը քննության առան արտադրական խորհրդակցությունում։ Արտադրության մի շարք առաջավորներ առաջարկեցին անցնել աշխատանքի խտացման առաջավոր մեթոդին, ըստ որի ամեն մի ջուլհակ 720 իլիկի փոխարեն պետք է սպասարկեր 1080 իլիկի։ Չնայած այն հանգամանքին, որ որոշ աշխատողներ անհնար էին համարում այդ նոր մեթոդի կենսագործումը, սակայն առաջավոր բանվորուհիներ Ժ. Պետրոսյանը և Ա. Ալեքսանյանը գործնականում ցույց տվեցին, որ բանվորական ժամանակը արդյունավետ օգտագործելու, տեխնոլոգիական պրոցեսները ճիշտ կիրառելու միջոցով

կարելի է 720 իլիկի փոխարեն սպասարկել 1080 իլիկ։

Կարճ ժամանակից հետո ագիտկոլեկտիվի ղեկավար Խ. Հակոբյանը ագիտատորների սեմինար պարապմունք հրավիրեց ուր ագիտատորները խորը և բազմակողմանիորեն ուսումնասիրեցին նորարար բանվորուհիների աշխատանքի փորձը և այն մի քանի անգամ ու մանրամասնորեն պարզաբանեցին մյուս աշխատողներին։ Ինչ խոսք, որ հիանալի արդյունք ստացվեց։ Գրեթե բոլոր մանող բանվորուհիները յուրացրին առաջավոր այդ փորձը և սկսեցին աշխատել նորարարներ Պետրոսյանի ու Ալեքսանյանի օրինակով։ Դրանից հետո ֆաբրիկան պատվով կատարեց արտադրական պլանները և հաղթանակով դուրս եկավ սոցիալիստական մրցությունից։

Ֆաբրիկայում շաբաթական մեկ անգամ տեղի է ունենում ագիտատորների սեմինար պարապմունք, իսկ շատ հաճախ նաև հրահանգչական խորհրդակցություն։

Ագիտատորների համար սիստեմատիկաբար սեմինար պարապմունքներ կազմակերպելու և այն քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու ուսանելի փորձ ունի նաև Լենինականի Գուլպա-տրիկոտաժի գործարանի ագիտկոլեկտիվը։ Այդ է պատճառը, որ



գործարանում գնալով ուժեղանում է բանվործառայողների շրջանում կատարվող քաղաքական-բացատրական աշխատանքը։ Այստեղ ագիտատորները ունկնդիրների հետ պարբերաբար զրույցներ են ունենում բարձրորակ արտադրանք թողարկելու, հումքը և էլեկտրաէներգիան խնայելու, մեքենաներն ու գործիքները արդյունավետ օգտագործելու, ստանձնած պարտավորությունները անթերի կատարելու, մեր երկրի արտաքին ու ներքին դրության և բազմաթիվ ուրիշ թեմաների շուրջը։

— Ագիտացիոն աշխատանքի բնագավառում ձեռք բերված հաջողությունը ես բացատրում եմ նրանով,— ասում է նույն գործարանի գործող ցեխի ագիտատոր Ա. Կարապետյանը,— որ սեմինար պարապմունքներում մեզ հանգամանորեն հրահանգավորում են, թե ունկնդիրներին ինչպես պարզաբանել պարտիայի և կառավարության որոշումները, առաջավոր փորձը, ո՞ր հարցերի վրա բևեռել նրանց ուշադրությունը, ինչպես կատարել քննադատական դիտողություն՝ ետ մնացողների նկատմամբ և ինչպես խրախուսել ու օգնել նրանց մրցության առաջավորներին հասնելու համար։

Ունկնդիրների լայն շրջանում կատարվող ագիտացիոն-բացատրական աշխատանքն ա-

վելի արդյունավետ կդառնա, եթե սեմինար պարապմունքներում ագիտատորներին բացի մեթոդական օգնություն ցույց տալուց և հրահանգավորելուց, փորձի փոխանակման կարգով քննարկվեն նաև նրանց, հատկապես սկսնակ ագիտատորների զրույցները։ Մեր ագիտատորները սեփական փորձից գիտեն, թե ինչպես իրենց զրույցը ունկնդիրների հետ ավելի հետաքրքիր է լինում, երբ այն նախօրոք քննարկվում է սեմինար պարապմունքում։ Նախ ագիտատորի համար շատ հարցեր ավելի մանրամասնորեն են պարզաբանվում, հնարավորություն է ստացվում ժամանակին վերացնել թերությունները, հստակ պատկերացում ունենալ զրույցի թեմայի մասին և մանավանդ զրույցը հարստացնել սեմինար պարապմունքին մասնակից ագիտատորների խելացի ու մտածված քննադատական դիտողությունները հաշվի առնելով։

— Մեզանից ամեն մեկը,— ասում է նույն գործարանի նախապատրաստական ցեխի ագիտատոր Մ. Մակարյանը,— սեփական փորձից գիտե, որ սեմինար պարապմունքում ինքը շատ բան է սովորում, երբ այդ սեմինարում կամ քննարկում են իր զրույցը կամ անձամբ ինքն է մասնակցում զրույցի քննարկմանը։



— Սեմինար պարապմունքներից մեկում,— շարունակում է ագիտատորը,— քննարկվեց իմ հերթական զրույցը՝ արտադրանքի որակը բարելավելու մասին։ Սեմինարում ագիտատորները մի շարք դիտողություններ արեցին զրույցն ավելի պատկերավոր դարձնելու վերաբերյալ։ Նրանք, օրինակ, նշեցին, որ արտադրանքի որակը բարձրացնելու հնարավորությունների մասին խոսելուց և այդ կապակցությամբ ձեռք բերված հաջողությունները պարզաբանելուց բացի, անհրաժեշտ է նաև զրույցի ընթացքում կոնկրետ օրինակներ բերել հենց նախապատրաստական ցեխից, որտեղ պետք է տեղի ունենար զրույցը, պատմել այն մասին, թե ով, ինչպես է պայքարում արտադրանքի որակը բարձրացնելու համար։

Այդ նույն սեմինարում ագիտատորները խորհուրդ էին տվել ընկ. Մակարյանին, որ նա իր զրույցը հարստացնի քննադատական դիտողություններով և պարզաբանի ունկնդիրներին, թե ինչպես անել որ ցեխի բոլոր աշխատողները հասնեն առաջավորներին, երկրին տան միայն բարձր որակի արտադրանք։

Օգտվելով սեմինար պարապմունքում արված քննադատական դիտողություններից, ագիտատոր Մակարյանը իր զրույցը հարստացնում է նոր փաստերով։ Երբ նա հանդես

է գալիս ցեխում, ունկնդիրները սիրով են լսում նրան և ակտիվորեն մասնակցում զրույցին։

Իհարկե վերը հիշված գործարանի ագիտկոլեկտիվում ամեն ինչ բարեհաջող չէ, այնտեղ էլ կան թերություններ, բայց ագիտատորներին ցույց տրվող օգնությունը ուսանելի է։

Սակայն բոլոր ագիտկոլեկտիվների ղեկավարները չեն, որ պատշաճ ուշադրություն են դարձնում ագիտատորների սեմինար պարապմունքների վրա։ Օրինակ, Կրասնոսելսկի շրջանի Նոր Բաշգյուղում դեռ չի եղել դեպք, որ փորձի փոխանակման կարգով որևէ ագիտատորի զրույց նախօրոք քննարկվի։ Այստեղ ագիտկոլեկտիվի ղեկավարը տեղեկություն չունի, թե որ ագիտատորը ունկնդիրների հետ ինչպես է զրույց անցկացնում, ինչ դժվարությունների է հանդիպել և ինչի կարիք է զգում։ Նրա կարծիքով բոլոր ագիտատորներն էլ լավ են աշխատում և հիանալի գիտեն այն թեման, որի մասին զրույց են անցկացրել։ Այնինչ ագիտատորներ Հ. Պետրոսյանի և Ա. Ջիլինգարյանի հետ մեր զրույցը հակառակը ցույց տվեց։ Չնայած այն հանգամանքին, որ նրանք մի քանի օր առաջ ունկնդիրների հետ զրույց էին ունեցել Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության աշխատողների սոցիա-



լիստական պարտավորությունների մասին, բայց նրանք չգիտեին, թե իրենց կոլտնտեսությունը հարյուր հեկտար հողատարածության դիմաց քանի ցենտներ կաթ, միս, բուրդ և այլ անասնապահական մթերքներ է ստանալու 1958 թվականին։

Կասկած չի կարող լինել, որ եթե վերը հիշված ագիտատորներից մեկն ու մեկի զրույցը սեմինար պարապմունքում քննարկվեր, ապա նրանք պարզ պատկերացում կունենային, թե ինչի համար է պայքարում ոչ միայն իրենց կոլտնտեսությունը, այլ նաև մեր ռեսպուբլիկան։

Բազմաթիվ ագիտատորներ սեփական փորձից ելնելով, հաստատում են այն ճշմարտությունը, որ սեմինար պարապմունքները ագիտատորների մեջ զարգացնում են ունկնդիրներին մոտենալու հմտություն, նրանց հուզող հարցերին գոհացուցիչ պատասխան տալու կարողություն։ Կատարելով ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակում, ագիտատորները սովորում են քաղաքական-մասսայական աշխատանքի նոր ձևեր ու նոր մեթոդներ։

Ագիտատորներին օգնություն ցույց տալու լավագույն միջոցներից է նաև նրանց զրույցների ունկնդրումը։ Ագիտկոլեկտիվի ղեկավարը սիստեմատիկորեն տեղում լսելով ա-

գիտատորների զրույցները, պարզ պատկերացում է ունենում, թե տվյալ ագիտատորը ինչպես է կատարում պարտիական այդ ամենալուրջ հանձնարարությունը, չէ՞ որ քաղաքական ագիտացիան այն հիմնական միջոցն է, որ ամրապնդում է պարտիայի մշտական կապը աշխատավորների հետ, ունկնդիրները գոհ են մնում նրանից, թե ոչ, որքանով են նպաստում նրա զրույցները տվյալ ձեռնարկության, կոլտնտեսության կամ սովխոզի առջև դրված խնդիրները կատարելու գործին։

Ինչպես տեսնում ենք ագիտատորներին սիստեմատիկաբար մեթոդական օգնություն ցույց տալու, նրանց ժամանակին հրահանգավորելու, ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակում կատարելու գործում վճռական նշանակություն ունեն սեմինար պարապմունքները։

Կան ագիտատորներին օգնելու նաև ուրիշ շատ միջոցներ։ Օրինակ, նրանց գրականությամբ և ցուցադրական նյութերով ապահովելը, նրանց համար քաղաքական թեմաների շուրջ զեկուցումներ ու դասախոսություններ կազմակերպելը և այլն։

Պարտկազմակերպությունների ղեկավարությամբ պետք է սիստեմատիկ և արդյունավետ գործեն ագիտատորների սեմինար պարապմունքները։

---

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԲԱՌԱՐԱՆ

Վակուում.— Լատինական բառ է, որ նշանակում է դատարկություն։ Վակուում տերմինը քաղաքական տերմինոլոգիայում վերջին մեկ տարուց ավելի ժամանակաշրջանում շատ գործածական է դարձել։ Դա կապված է «Դալես—Էյզենհաուերի» տխրահռչակ դոկտրինայի հետ։ Հայտնի է, որ ներկա ժամանակներում հանդես են գալիս գաղութային քաղաքականության նոր ձևեր, որոնք կիրառում են ագրեսիվ իմպերիալիստական ուժերը. գլխավորապես Ամերիկայի Միացյալ Նահանգները։ Եգիպտոսի (այժմ Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի եգիպտական մաս) դեմ Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ռազմական ավանտյուրայի (1956 թ. հոկտեմբեր—նոյեմբեր) ձախողումից հետո, երբ անգլո-ֆրանսիական իմպերիալիստները հիմնովին հեղինակազրկվեցին և կորցրին իրենց ազդեցությունը արաբական աշխարհում, ամերիկյան իմպերիալիստներն առաջ քաշեցին «Դալես—Էյզենհաուերի» դոկտրինան, որով հայտարարում են, թե Միջին Արևելքում իբր ստեղծվել է «վակուում» (դա-

տարկություն), իսկ իրենք կոչված են լցնելու դատարկությունը։

Մինչդեռ հանրահայտ է, որ Միջին Արևելքում ոչ մի «վակուում» չկա։ Աշխարհի այդ մասում ապրելու պիտանի բոլոր հողերը բնակեցված են արաբական ազատասեր ժողովուրդներով։ Իրականում «վակուումի» դոկտրինան ամերիկյան գաղութատիրական քաղաքականության սովորական մեթոդներից է և նպատակ ունի, խաբելով ժողովուրդներին, ԱՄՆ-ի ազդեցությունը տարածել արաբական երկրների վրա, այդ տեղերից դուրս մղելով Անգլիային և Ֆրանսիային, գրավելով նրանց տեղը։ Դա արհամարհանք է ժողովրդի նկատմամբ, դա նշանակում է չճանաչել արաբական երկրների անկախությունը, որոնք իմպերիալիստների կարծիքով պետք է ենթարկվեն կամ անգլիական ու ֆրանսիական գաղութարարներին, կամ ամերիկյան գաղութարարներին, որովհետև այդ ժողովուրդները իբր թե չեն կարող ինքնուրույն, առանց այդ գաղութատերերի կառավարվել։

Ակնհայտ է, որ «վակուումի» տեսությունը ամերիկյան քողարկված գաղութարարական ծրագիր է՝ ուղղված Մերձավոր և Միջին Արևելքի երկրների դեմ։ Սակայն այդ երկրների ժողովուրդները լավ են հասկանում իմպե-



րիալիստների գաղութարարական նպատակները։ Նրանք պայքարում են բոլոր իմպերիալիստների դեմ խորապես գիտակցելով, որ վերջինները մահացու կերպով վտանգավոր են իրենց համար։

Գաղութակալության դեմ արաբական ժողովուրդների պայքարի շնորհիվ ձախողվել է «Դալես—Էյզենհաուերի» «վակուումի» դոկտրինան։

**Դոկտրինա.**—Լատինական բառ է, որ նշանակում է փիլիսոփայական, քաղաքական ուսմունք, տեսություն, քաղաքական ծրագիր։ Դոկտրինա տերմինը շատ հաճախ է օգտագործվում քաղաքականության ասպարեզում։ Օրինակ, «Դալես—Էյզենհաուերի դոկտրինան», Տրումենի դոկտրինան և այլն, որտեղ շարադրված են ամերիկյան իմպերիալիզմի քաղաքական ծրագրերը, ձգտումները պատմական տարբեր ժամանակներում, կոնկրետ կարևոր հարցերում։

**Ստատուս-Քվո.**— Լատինական բառ է, որ նշանակում է որոշակի ժամանակաշրջանում, տվյալ մոմենտին գոյություն ունեցող կամ ունեցած վիճակ (տերիտորիալ, քաղաքական և այլն)։ Օրինակ, ասում ենք պաշտպանել, ճանաչել ստատուս-քվոն (ստեղծված վիճակը, դրությունը), վերականգնել ստա-

տուս-քվոն (այն վիճակը, որ գոյություն ուներ մինչև կատարված փոփոխությունը)։

**Ստատուս**.— Լատինական բառ է, որ նշանակում է կանոնադրություն։ Միջազգային իրավունքի և քաղաքականության մեջ ստատուս նշանակում է կանոնադրություն որևէ միջազգային կազմակերպության մասին, օրինակ, Միավորված Ազգերի Կազմակերպության (ՄԱԿ) ստատուսը (կանոնադրությունը) և այլն։

**Ռևանշ**.— Ֆրանսիական բառ է, որ նշանակում է փոխվրիժառություն, փոխհատուցում, ետշահում, վերաշահում։ Վրեժ առնել, փոխհատուցել պարտության համար (պատերազմում, խաղի մեջ)։ Երկրորդ անգամ պատերազմել (խաղալ) նախկին հաղթողին պարտության մատնելու նպատակով, դրանով վրեժ առնել, տեղը հանել, ետշահել, փոխհատուցել։

**Ռևանշիզմ**.— (Ֆրանսիական ռևանշ բառից է) ռևանշիզմը կապիտալիստական որևէ պետության ձգտումն է նոր պատերազմի միջոցով վերադարձնել նախորդ պատերազմում իր պարտության հետևանքով կորցրած տերիտորիաները, վերականգնել իր դիրքը։ Ռևանշիզմն օգտագործվում է բուրժուազիայի կող-



մից իմպերիալիստական, զավթողական պատերազմ նախապատրաստելու համար։

Օրինակ, ներկայումս Գերմանական Ֆեդերատ. Ռեսպուբլիկայում Ադենաուերի կառավարությունը տենդագին կերպով վարում է երկրի սպառազինման քաղաքականություն, որպեսզի առաջիկայում վերականգնի հիտլերյան Գերմանիայի տերիտորիալ և քաղաքական դիրքերը ու դրանով պատերազմի միջոցով պարտության մատնի, հաղթի ՍՍՌՄ-ին, վրեժ լուծի Սովետական Միությունից, որը երկրորդ համաշխարհային պատերազմում խայտառակ պարտության մատնեց ֆաշիստական Գերմանիային և փրկեց Եվրոպայի ժողովուրդներին հիտլերյան ստրկությունից։ Իսկ ամերիկյան իմպերիալիստներն ամեն կերպ ոգեշնչում են գերմանական ռևանշիստներին, որպեսզի նրանց օգտագործեն ՍՍՌՄ-ի, սոցիալիզմի ու խաղաղության ամբողջ լագերի դեմ ամերիկյան իմպերիալիզմի համաշխարհային տիրապետություն հաստատելու իրենց ցնորամիտ պլաններն իրականացնելու համար։

**Անեքսիա**.— Լատինական բառ է, որ նշանակում է միացում։ Մի պետության կողմից մյուս պետության տերիտորիայի կամ նրա տերիտորիայի մի մասի բռնի միացումը,

զավթումը հակառակ նրա ժողովրդի կամքին կոչվում է անեքսիա։ Անեքսիան իմպերիալիստական պետությունների զավթողական քաղաքականության մեթոդներից մեկն է։ Օրինակ 1938 թվականին ֆաշիստական Գերմանիան անեքսիայի (բռնի միացման) ենթարկեց իրենից թույլ Ավստրիային։

Սովետական Միությունը հետևողականորեն միշտ հանդես է եկել ու հանդես է գալիս անեքսիայի դեմ։

---

## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

### ՄՈՒՐՃ ԱՏՐՃԱՆԱԿ

Արդյո՞ք հնարավոր է կրակոցի միջոցով մեխեր խփել։ Իհարկե ոչ, կասեք դուք։ Սակայն մի շտապեցեք։ Մի շարք երկրներում արդեն կիրառվում է այդպիսի հատուկ մուրճ-ատրճանակ։ Դրա օգնությամբ ամրացնող մասերը խփում են բետոնի, երկաթբետոնի, աղյուսի և նույնիսկ քարի մեջ։

Մուրճ-ատրճանակի մեջ դնում են վառոդի լիցքով փամփուշտ։ Սեղմում են ձգանը։ Վառոդը պայթում է, և վառոդային գազերը զարկանին առաջ են մղում։ Զարկանը ուժեղ թափով խփում է մանող մասնիկին և վայրկենապես այն մտցնում է պատի կամ միջնորմի մեջ։ Նայած իրի ամրությանը, որի մեջ մեխվում է մասնիկը, ամորտիզատորը կարգավորում է հարվածի ուժը։

Աշխատանքի ընթացքում այդ սարքը անվտանգ է և չափազանց արդյունավետ։

### ԹԱՐԳՄԱՆՈՂ ՄԵՔԵՆԱ

Էլեկտրոնային ավտոմատ մեքենաների հաշվարկումների օգնությամբ, կարելի է մեկ լեզվից մի այլ լեզվով բնագրերի թարգմանություններ կատարել։ Մեքենան կառուցված է այնպես, որ նրա մեջ տեղավորված են լեզուների բառարաններ, շարահյուսական նշաններ

և որոշ քերականական կանոններ, որոնք վերածված են հատուկ կոդերի։ Այն բնագիրը, որը հարկավոր է թարգմանել նմանապես վերածվում են կոդերի և մըտցվում մեքենայի մեջ։ Թարգմանությունը կատարվում է ավտոմատիկ, տպագրված ձևով։

Մեքենայական թարգմանությունների լայն ծավալումը դեռևս վաղվա հարց է։ Դրա համար անհրաժեշտ է լուծել մի շարք տեխնիկական խնդիրներ։ Ներկայումս գործող թարգմանական մեքենաների մեջ կարելի է տեղավորել միայն մի քանի հազար բառ, իսկ զանազան բնագրերի թարգմանության համար անհրաժեշտ է մի քանի միլիոն բառ։ Սակայն ներկայումս հաջող փորձեր են կատարվում գիտա-տեխնիկական բնագրերի մեքենայական թարգմանությունների ուղղությամբ, որոնք ինչպես հայտնի է ունեն սահմանափակ բառեր։ Ընդ որում արագությունը մեկ րոպեում հասնում է մինչև 10 նախադասության։ Այնուհետև մնում է մեքենայական թարգմանությունը միայն խմբագրել։

### ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ՏԵՂԻ ՈՒՆԵՆՈՒՄ ՄԱԿԸՆԹԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ՏԵՂԱՏՎՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ով եղել է օվկիանոսի ափին, նա լավ գիտի մակընթացությունների և տեղատվությունների երևույթը։ Օրվա ընթացքում երկու անգամ ջրի մակարդակը բարձրանում և հեղեղում է ցածրադիր ափերը, իսկ հետո



կրկին ետ է քաշվում։ Այդ երկու մակընթացությունը լինում է ոչ թե 24 ժամվա, այլ 24 ժամ 50 րոպեի ընթացքում։ Դա համապատասխանում է երկնակամարով լուսնի անցած ժամանակամիջոցին։ Իսկ ի՞նչ դեր է այստեղ խաղում Լուսինը։

Սրա պատասխանը տվել է անգլիական մեծ գիտնական Նյուտոնը։ Նա հայտնագործել է տիեզերական ձգողականության օրենքը, ըստ որի երկու մարմին շարունակ ձգում են միմյանց։ Այսպիսով Երկիրը դեպի իրեն է ձգում Լուսնին, իսկ Լուսինը՝ Երկրին։ Սակայն ձգողականության ուժը հեռավորության պատճառով նվազում է։ Այդ պատճառով Երկրի այն կողմը, որն ուղղված է դեպի Լուսինը, Լուսնի ձգողականությունը ավելի մեծ է, քան հակառակ կողմում։ Լուսնի ձգողականության ազդեցության տակ Երկիրը մի փոքր շեղվում է Արևի շուրջը կատարվող իր ուղուց։ Ընդ որում Լուսնի կողմը դարձված օվկիանոսի ջուրը մի փոքր առաջ է ընկնում Երկրի կարծր մարմնի շարժումից, և օվկիանոսի մակարդակը բարձրանում է, տեղի է ունենում մակընթացություն։ Երկրի հակառակ կողմում օվկիանոսի ջուրը մի քիչ ետ է ընկնում Երկրի պինդ մարմնից և վերստին տեղի է ունենում մակընթացություն։ Մակընթացության վրա ներգործում է նաև Արևի ձգողականությունը։

### ԹԱՆԿԱՐԺԵՔ ՆԵԿՏԱՐԱՏՈՒ ԾԱՌ

Մեղվաբուծության գծով 16-րդ միջազգային կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1956 թվականին Վիեն-

նայում, չեխոսլովակյան մեղվաբույծ Ստեֆան Խագարը հանդես եկավ հետաքրքիր առաջարկությամբ։

— Առաջավոր երկրներում,— ասաց Խագարը,— գյուղատնտեսությունը տարեցտարի ավելի լայն տարածություն է ընդգրկում, հետզհետե դուրս մղելով վայրի բուսականությունը։ Դա նշանակում է, որ մեղուների համար բնական տարածությունները գնալով կրճատվում և խղճուկ են դառնում։ Սակայն տնտեսության համար մեղուներ հարկավոր են։

Խագարը առաջարկեց աճեցնել սպիտակ ակացիա։ Այդ առանձին խնամք չպահանջող ծառատեսակը կարող է աճել ամենատարբեր պայմաններում, բացի ճահճային տեղերից, իսկ ծաղիկների մեջ նեկտարի արտադրության տեսակետից նա առաջիններից մեկն է։ Եվրոպայում աճում է մոտ երկու տասնյակ տեսակ սպիտակ ակացիա՝ ակացիա առանց փշերի, ակացիա, որ սեզոնի ընթացքում ծաղկում է մի քանի անգամ և շարունակ շատ նեկտար է տալիս և ուրիշները։ Հարկավոր է լավ տեսակներ ընտրել և զանազան խաչաձևումներ կատարել։ Նրանց սերունդը կլինի լավագույններից լավագույնը։

Եթե այդ աշխատանքը կատարվի լայն մասշտաբով, ապա շատ շրջաններ կստանան նոր թանկարժեք նեկտարատուներ։

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ